Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 8 ԱՊՐԻԼ 1954

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 3—52—78։*

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ՕՐԵՐԻՆ

*Հարազատ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշակել են սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի հոյակապ և մարտական ծրագիր։*

*ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշման և պարտիայի ու կառավարության կողմից վերջերս ընդունված մյուս որոշումների մեջ նշված են կոնկրետ միջոցառումներ սոցիալիստական գյուղատնտեսության արագատեմպ զարգացումն ապահովելու և հատկապես երկրում հացահատիկի արտադրությունն ավելացնելու համար։*

*Պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող այդ ամենակենսական և համաժողովրդական խնդիրները կատարելու գործում մեծ անելիքներ ունեն մեր ագիտատորները։*

*Արդեն ռեսպուբլիկայի մի շարք կոլտնտեսություններում և սովխոզներում սկսվել են գարնան գյուղատնտեսական աշխատանքնե-*

րը։ Կոլտնտեսային աշխատավորները հենց այժմյանից պայքարում են պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար։

Ագիտատորների խնդիրն է՝ գարնանացանի այս օրերին ագիտացիոն-քաղաքական ամբողջ աշխատանքի կենտրոնը փոխադրել դաշտ, կոլտնտեսային աշխատավորների լայն շրջանում, ուր որոշվում է բարձր բերքի բախտը, հիշելով, որ գարնանացանի հաջող անցկացումը բարձր բերք ստանալու պայմաններից մեկն է։ Շահումյանի շրջանի Ջարբախ և Նոր-Կողբ գյուղերի ագիտատորներն արդեն դաշտում և այգիներում կոլտնտեսականների համար հատուկ զրույցներ են կազմակերպել առաջավոր այն աշխատողների մասին, որոնք աչքի ընկնող աշխատանք են կատարել ցանքը տեսակավոր, զտված ու կոնդիցիոն սերմացույով ապահովելու գործում։ Նրանք մասսայաբար խրախուսել և տարածել են այն կոլտնտեսականների աշխատանքի փորձը, որոնք տորֆա-բուսային թաղարներում և ջերմոցներում աճեցրել են առողջ ու փարթամ սածիլներ, ճիշտ և արդյունավետ կերպով են օգտագործել պարարտանյութերը։ Դա կենսական նշանակություն ունեցող հարց է, որովհետև բարձր բերքի համար մղվող պայ-



քարը հաջողությամբ կպսակվի միայն այն ժամանակ, երբ բոլոր ցանքերը կկատարվեն զտված ու տեսակավոր սերմերով ու ջերմոցներից դաշտ կտեղափոխվեն առողջ ու փարթամ սածիլներ, երբ անընդհատ կբարելավվի գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների մշակությունը։

Ագիտացիոն զրույցների ընթացքում պետք է կոլտնտեսականների ուշադրությունը բևեռել թերությունների արագ կերպով վերացնելու հարցերի վրա։ Անարդյունավետ և վնասակար է ագիտացիոն այն զրույցը, երբ ագիտատորը ամեն ինչ համարում է դրական, չի նկատում և չի բացահայտում գոյություն ունեցող թերությունները, ունկնդիրներին չի պահում մոբիլիզացիոն վիճակում։ Յուրաքանչյուր ագիտացիոն զրույց պետք է լինի կոնկրետ և նպատակասլաց։ Զրույցի ընթացքում խիստ կարևոր է, որ ագիտատորը ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանի, թե գարնանացանի կապակցությամբ ինչ խնդիրներ են դրված իրենց կոլտնտեսության, բրիգադայի, օղակի և ամեն մի կոլտնտեսականի առջև։

Մոտենում է աշխատավորների միջազգային տոնը՝ Մայիսի մեկը։ Ինչպես ՍՍՌՄ բոլոր աշխատավորները, այնպես էլ կոլտնտե-

սային աշխատավորությունը ուժ ու եռանդ չեն խնայում մայիսմեկյան տոնը արժանավայել կերպով նշանավորելու համար։ Ագիտատորների խնդիրն է պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ լայնորեն ծավալել նախամայիսյան սոցիալիստական մրցություն կոլտնտեսային աշխատավորների, մեքենա-տրակտորային կայանների մեխանիզատորների, սովխոզների բանվոր-ծառայողների շրջանում, հասնել այն բանին, որ կոլտնտեսությունները, սովխոզները, մեքենա-տրակտորային կայանները ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարեն գարնան գյուղատնտեսական բոլոր աշխատանքները։ Բասարգեչարի շրջանում սոցիալիստական մրցությունը դարձել է ավելի մասսայական։ Մրցության մեջ են ներգրավված գյուղատնտեսության գրեթե բոլոր աշխատողները։ Այստեղ գարնանացանը գերազանց ցուցանիշներով կատարելու համար ոչ միայն օղակները-օղակների, բրիգադները-բրիգադների և կոլտնտեսականներն ու մեխանիզատորները միմյանց հետ, այլև ամբողջ կոլտնտեսություններ և մեքենա-տրակտորային կայաններ մտել են նախամայիսյան սոցիալիստական մրցության մեջ։



Սոցիալիստական մրցությունն ավելի արդյունավետ դարձնելու նպատակով ագիտատորները պետք է օգնեն մրցողներին ստանձնելու մոբիլիզացնող պարտավորություններ և ժամանակին կատարելու այն։ Հարկավոր է, որ նրանք ագիտացիոն զրույցների ընթացքում կոլտնտեսականներին և գյուղատնտեսության ֆրոնտի մյուս աշխատողներին հանգամանորեն պարզաբանեն սոցիալիստական մրցության ընթացքը, այն, թե ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը, գարնանացանի ընթացքում ինչպիսի նոր առաջավորներ են հանդես եկել, որն է նրանց աշխատանքում ուսանելին և այլն։

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ստեղծող Վ. Ի. Լենինը նշում էր, որ «Պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ։ Նա ուժեղ է այն ժամանակ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչի գնում են գիտակցորեն»։

Ուստի խիստ անհրաժեշտ է, որ մեր ագիտատորները գարնանացանի օրերին և հետագայում պարբերաբար կոլտնտեսականներին պարզաբանեն սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման

վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները, որոնք ծառայում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ծաղկմանն ու բարգավաճմանը, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացմանը, կոլտնտեսային աշխատավորությանը ցույց տան սոցիալիստական գյուղատնտեսության գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ։

Ագիտացիոն զրույցները պետք է սերտորեն կապված լինեն տվյալ կոլտնտեսության, սովխոզի, մեքենա-տրակտորային կայանի, բրիգադայի առջև դրված պրակտիկ խնդիրների հետ, կյանքի հետ։ Չի կարելի հանդուրժել ագիտացիոն այնպիսի զրույց, երբ ունկնդիրների հետ խոսում են երկրում հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին, բայց կոնկրետ օրինակներ չեն բերում տեղից, թե ինչ է արվում իրենց մոտ հացահատիկի բերքատվությունը բարձրացնելու, գարնանացանը լավագույն ցուցանիշներով կատարելու համար։

Այս օրերին ագիտատորները խոշոր անելիքներ ունեն նաև սարքին մամուլի՝ պատի թերթերի և հատկապես դաշտային ինֆորմ-կաների աշխատանքը բարելավելու ուղղությամբ։ Նրանց պատվի գործն է՝ պատի թեր-



թերն ու ինֆորմ-կաները դարձնել բովանդակալից, հետաքրքիր ու նպատակասլաց, լայնորեն մասսայականացնելով առաջավոր փորձը գարնան գյուղատնտեսական աշխատանքների ընթացքում։

Մեր ագիտատորների առաջնահերթ խնդիրն է նաև լայնորեն մասսայականացնել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասին պարտիայի և կառավարության որոշումը։ Բոլոր կոլտնտեսականներին մանրամասնորեն ծանոթացնել ցուցահանդեսին մասնակցելու պայմանների հետ, օգնել նրանց մտնելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին մասնակցելու իրավունքի համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ։ Դա կմոբիլիզացնի կոլտնտեսային աշխատավորներին ավելի եռանդուն և արդյունավետ պայքարելու բերքատվության բարձրացման համար։

Գարնանացանի օրերին է՛լ ավելի ուժեղացնենք կոլտնտեսություններում, սովխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում աշխատավորության մեջ կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքը, օգնենք նրանց պատվով կատարելու ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան և Փետրվար—Մարտյան պլենումների պատմական որոշումները։

---

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ՝ ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ

*Մայիսի 1-ը աշխատավորների միջազգային համերաշխության և բոլոր երկրների բանվորների եղբայրության օրն է։ Մայիսի մեկին Սովետական Միության և ամբողջ աշխարհի աշխատավորները ցուցադրում են իրենց վճռականությունը, մարտական պատրաստակամությունը պայքարելու նոր պատերազմի հրձիգների դեմ, հանուն կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության, հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի։*

*Մեր երկրի աշխատավորները Մայիսի մեկը դիմավորում են սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման, Սովետական պետության պաշտպանության ամրապնդման, ամբողջ աշխարհի խաղաղության գործի հետագա ամրապնդման ասպարեզում ձեռք բերած նորանոր հաջողություններով։*



*Սովետական մարդիկ ուժեր և եռանդ չեն խնայում սոցիալիստական արդյունաբերության ու գյուղատնտեսության հետագա զարգացման, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ծաղկման ու բարգավաճման վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի որոշումները, պարտիայի և կառավարության բոլոր առաջադրանքները պատվով կենսագործելու համար։*

*1953 թվականին արդյունաբերական արտադրության ծավալը 2,5 անգամ գերազանցեց նախապատերազմյան 1940 թ. մակարդակը։ Անցած տարի ծանր արդյունաբերությունը զգալի հաջողություններ ձեռք բերեց պողպատի ձուլումը, ածխի ու նավթի հանույթը և էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացնելու ասպարեզում։*

*1953 թվականին ՍՍՌՄ-ում արտադրվել է 38 միլիոն տոննա պողպատ՝ 2 անգամ ավելի, քան 1940 թվականին, արդյունահանվել է 320 միլիոն տոննա ածուխ՝ 2 անգամ ավելի, քան 1940 թվականին, երկիրն ստացել է 52 միլիոն տոննա նավթ՝ 70 տոկոսով ավելի, քան 1940 թվականին։*

*Կոմունիստական պարտիան հետևողականորեն իրագործում է Վ. Ի. Լենինի մեծ պատգամն այն մասին, որ «Կոմունիզմը՝ դա*

Սովետական իշխանությունն է՝ պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։ 1953 թվականին ՍՍՌՄ էլեկտրակայանները արտադրեցին 133 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, կամ 68 անգամ ավելի, քան արտադրվել էր 1913 թվականին։ Հինգերորդ հնգամյակի անցած 3 տարում շարք են մտել 24 նոր հզոր էլեկտրակայաններ, շահագործման են հանձնվել Ուստ-Կամենոգորսկի էլեկտրակայանը, Գյումուշի ԳԷՍ-ը, Մինգեչաուր ԳԷՍ-ի առաջին հերթը, այս տարի ավարտվում է Կամայի և Գորկու ԳԷՍ-երի կառուցումը։ Վոլգայի, Կամայի, Անգարայի վրա և այլ շրջաններում կառուցվող նոր վիթխարի էլեկտրակայանները հնարավորություն կտան է՛լ ավելի լայնորեն ծավալելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում նաև հողագործության էլեկտրիֆիկացումը։

Բուռն կերպով զարգանում է սովետական մեքենաշինությունը՝ մեր ինդուստրիայի առաջավոր հիմքն ու սիրտը։ 1953 թվականին արտադրվել է 3,8 անգամ ավելի շատ մեքենաներ ու սարքավորում, քան 1940 թվականին։

Ծանր արդյունաբերության զարգացման հաջողությունները ապահովեցին տրանս-



պորտի և կապի աշխատանքի վերելքը։ Մեր երկրի ընդարձակ տարածություններով երթևեկում են հայրենական արտադրության առաջնակարգ գնացքներ, ծովային ու գետային նավեր, ավտոմոբիլներ և ինքնաթիռներ։

Մեր երկրի ծանր արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերված մակարդակը պայմաններ նախապատրաստեց ժողովրդական սպառման առարկաների արտադրության վճռական վերելքի համար։ Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը անհրաժեշտ գտան, չթուլացնելով մեր ծանր արդյունաբերության զարգացումը, սկսած 1953 թվականի երկրորդ կեսից, վճռական միջոցներ ձեռք առնել թեթև և սննդի արդյունաբերության ավելի արագ զարգացման համար, այն հաշվով, որ երկու-երեք տարվա ընթացքում զգալիորեն բարձրացվի երկրի բնակչության ապահովվածությունը մասսայական սպառման պարենային ու արդյունաբերական ապրանքներով։ Այդ ծրագիրը անշեղորեն կենսագործվում է և մեր երկրի աշխատավորներն արդեն ակնառու կերպով տեսնում են պարտիայի և կառավարության կողմից իրագործվող միջոցառումների առաջին արդյունք-

ները։ 1953 թվականին մասսայական սպառման առարկաներ արտադրող արդյունաբերության ճյուղերը զգալիորեն ավելի արագ էին զարգանում, քան 1952 թվականին։ Եթե այդ ճյուղերի արտադրանքը 1952 թվականին աճեց 10,5 տոկոսով, ապա 1953 թվականի երկրորդ կիսամյակում այն արդեն աճեց 14 տոկոսով։ 1953 թվականին թեթև արդյունաբերության արտադրանքի թողարկումը 1952 թվականի համեմատությամբ ավելացել է 12 տոկոսով, տարեկան պլանից դուրս թողարկվել է մետաքսյա, բրդյա և վուշի գործվածքներ, սպիտակեղեն, տրիկոտաժ, գուլպեղեն, բուսական յուղ, մարգարին, մակարոնեղեն և լայն սպառման այլ ապրանքներ։

1953 թվականի երկրորդ կիսամյակում ձեռնարկված միջոցառումների շնորհիվ ժողովրդական սպառման առարկաների արտադրությունն առաջին կիսամյակի դիմաց աճեց ավելի քան 30 միլիարդ ռուբլով։ 1953 թվականին կառուցվեց լայն սպառման ապրանքներ արտադրող մոտ 300 նոր ձեռնարկություն, սկսվել է տեքստիլ, կաշվի-կոշիկի հարյուրավոր ֆաբրիկաների, ինչպես նաև սննդարդյունաբերական ձեռնարկությունների խոշոր շինարարություն։ 1954



թվականին թեթև ու սննդի արդյունաբերության ասպարեզում կապիտալ ներդրումները 1953 թվականի համեմատությամբ կավելանան 84 տոկոսով և անցյալ տարվա 7,6 միլիարդ ռուբլու փոխարեն կհասնեն 14 միլիարդ ռուբլու։

Մեր երկիրը լուրջ հաջողությունների է հասել սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Սակայն պարտիան ոչ թե ելնում է գյուղատնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերված անվիճելի ու խոշոր հաջողություններից, այլև աշխատավորների անընդհատ աճող նյութական պահանջմունքներից։ Վերջին ամիսների ընթացքում ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան և Փետրվար—Մարտյան պլենումներում քննարկվեցին երկրում գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացման անհետաձգելի խնդիրները և ընդունվեցին գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի համար լայն միջոցառումներ։

Արդեն գյուղատնտեսության մեջ աշխատանքի են ուղարկվել 23 հազար ինժեներներ և տեխնիկներ։ Ներկայումս կոլտնտեսություններում անմիջականորեն աշխատում են ՄՏԿ-ների ավելի քան 100 հազար ագ-

րոնոմներ և զոոտեխնիկներ։ Արդյունաբերությունից և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից ՄՏԿ-ներն են վերադարձել մոտավորապես 50 հազար մեխանիզատորներ։

Մեր երկրում մեծ աշխատանք է կատարվել ու կատարվում գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։ 1953 թվականին գյուղատնտեսությունն ստացավ 139 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 18 հազար միջշարային մշակության տրակտոր, 41 հազար հացահատիկային կոմբայն, 69 հազար բեռնատար ավտոմոբիլ, ավելի քան 2 միլիոն հող մշակող, ցանող, բերք հավաքող և այլ մեքենաներ ու գործիքներ։

ՍՄԿԿ Կենտկոմի Փետրվար-Մարտյան պլենումը կարևորագույն որոշում ընդունեց երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խամ ու խոպան հողերի յուրացման մասին։ Հացահատիկային տնտեսությունը ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքն է, նրանով է որոշվում գյուղատնտեսության մյուս բոլոր ճյուղերի զարգացումը։

Մեր երկիրը ընդհանուր առմամբ բավարարում է հացահատիկի իր պահանջմունք-



ները։ Բայց հացահատիկի պահանջմունքներն անընդհատ աճում են ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում։ Որքան շատ լինի հացահատիկ, երկիրն այնքան շատ կըստանա գյուղատնտեսական մթերքներ՝ հաց, միս, ճարպ, կաթ, յուղ։ Ահա թե ինչու հացահատիկի արտադրության ընդլայնումը կարևորագույն, առաջնահերթ խնդիր է։

Պարտիան և կառավարությունը այդ խնդրի կատարման համար անհրաժեշտ գտան բոլոր տարածությունների բերքատվության բարձրացման հետ մեկտեղ յուրացնել 13 միլիոն հեկտար խոպան և խամ հողեր Ղազախստանի, Պովոլժյեի, Ուրալի և Սիբիրի շրջաններում; այդ տարածություններից 1955 թվականին պետք է ստացվի 1 միլիարդ 200 միլիոն փութ հացահատիկ, այդ թվում 800—900 միլիոն փութ ապրանքային հացահատիկ։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի խնդիրների իրագործումը հնարավորություն կտա հասնել սովետական ժողովրդի բարեկեցության հետագա զգալի բարելավմանը։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամեն միջոց գործ են դնում, որպեսզի բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիան՝ բոլոր սովետա-

կան մարդիկ ավելի լավ ապրեն, որպեսզի մեր ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը տարեցտարի, օրեցօր բարձրանա։

Մեր երկրի էկոնոմիկայի ընդհանուր վերելքի հիման վրա աճում է աշխատավորների նյութական բարեկեցությունը, անշեղորեն բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, աճում են գյուղացիների եկամուտները։ 1953 թվականին ընդհանուր առմամբ բանվորների և ծառայողների եկամուտը մեկ աշխատողի հաշվով 1952 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 13 տոկոսով։ Ավելացվում են պետական բյուջեից բնակչությանը տրվող ամենամյա վճարումները զանազան նպաստների և թոշակների, բժշկական ձրի օգնության, դպրոցներում սովորելու և կուլտուր-կենցաղային այլ կարիքների համար։

Զգալիորեն իջեցվել են կոլտնտեսականների անձնական տնտեսությունից գանձվող գյուղատնտեսական հարկը և պարտադիր հանձնումների նորմաները, բարձրացված են գյուղատնտեսական արտադրանքի շատ տեսակների մթերման ու գնման գները, կոլտնտեսականներին լրիվին զիջված են անցյալ տարիների գյուղատնտեսական հարկի



պարտքերը, պետությանը անասնաբուծության մթերքների ու կարտոֆիլի հանձնումների գծով պարտքը։ Այդ բոլոր միջոցառումների անցկացման շնորհիվ անցյալ տարի կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները ընդհանուր առմամբ աճեցին ավելի քան 13 միլիարդ ռուբլով։ Բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների եկամուտների ընդհանուր գումարը, հաշվի առնելով պետական մանրածախ գների իջեցումը, 4 տարում աճել է 60 տոկոսով։ Մանրածախ գների վերջին՝ հետպատերազմյան տարիների թվով 7-րդ իջեցման շնորհիվ բնակչությունը կստանա 20 միլիարդ ռուբլու լրացուցիչ եկամուտ, կբարելավվի բնակչության բոլոր խավերի նյութական կյանքի մակարդակը, կբարձրանա բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, կոլտնտեսականների եկամուտները։

Այժմ բոլորը տեսնում են, որ ապրանքների գների իջեցման քաղաքականությունը ինչ որ ժամանակավոր, անցողիկ միջոցառում չէ, որ դա Սովետական իշխանության տնտեսական ամբողջ գործունեության գլխավոր հիմքերից մեկն է, սովետական պետության ուժի և հզորության, ժողովրդական







*տնտեսության հուժկու վերելքի վառ արտահայտությունը:*

*Մեր երկրում խոշոր հաջողություններ են ձեռք բերվել ոչ միայն տնտեսական, այլև կուլտուրական շինարարության մեջ: Պարտիայի և կառավարության հատուկ հոգատարության առարկան է հանդիսանում բնակարանային շինարարությունը: Հետպատերազմյան տարիներին քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 183 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն՝ բանվորների և ծառայողների համար, գյուղական վայրերում ավելի քան 4 միլիոն տներ՝ կոլտնտեսականների համար:*

*Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերում սոցիալիստական կուլտուրայի ծաղկման, մեր ժողովրդի հոգևոր հարստությունների բազմապատկման, ժողովրդական կրթության, գիտության, գրականության, արվեստի հետագա զարգացման նկատմամբ:*

*Սովետական գիտնականները մի շարք խոշոր հայտնագործություններ են կատարել գիտելիքների զանազան բնագավառներում, լիկվիդացրել են ատոմային ռումբի ամերիկյան մոնոպոլիան և ստեղծել են ջրածնային ռումբ, ակտիվորեն աշխատում են մեր Հայ-*



*րենիքի բնական անսպառ հարստությունները հօգուտ ժողովրդի շահերի օգտագործելու համար:*

* * *

*Եղբայրական սովետական ռեսպուբլիկաների համերաշխ ընտանիքում, նրանց օգնությամբ և աջակցությամբ ծաղկում է Սովետական Հայաստանը: Մեծ են մեր ռեսպուբլիկայի նվաճումները ժողովրդական տնտեսության զարգացման գործում: Հինգերորդ հնգամյակի անցած 3 տարիների ընթացքում արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացավ 53 տոկոսով: 1953 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, 1940 թվականի համեմատությամբ, թողարկել է 2,8 անգամ ավելի արտադրանք, իսկ 1945 թվականի համեմատությամբ՝ 3,2 անգամ:*

*Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը 1954—55 թվականներին, 1953 թվականի համեմատությամբ կավելանա հետևյալ չափերով. բրդեղեն գործվածքների արտադրանքը կավելանա 1954 թվականին՝ 165 տոկոսով, 1955 թվականին՝ 226 տոկոսով, մետաքսեղենի արտադրությունը համապատասխանորեն՝ 70—137 տոկոսով,*

կոշկեղենինը՝ 40—46 տոկոսով, տրիկոտաժինը՝ 62—89 տոկոսով, երշիկի արտադրությունը՝ 63—95 տոկոսով, կենդանական յուղինը՝ 13—35 տոկոսով, ամանեղենինը՝ 3—8 անգամ, մակարոնինը և վերմիշելինը՝ 50—68 տոկոսով և այլն։ Առաջիկա երկու տարում մեր արդյունաբերությունը կտա լայն սպառման ապրանքների մի քանի տասնյակ նոր տեսակներ։ Նախատեսվում է կառուցել մոտ 70 նոր ձեռնարկություն, վերակառուցել և ընդլայնել մի քանի տասնյակ գործող ձեռնարկություններ, բացվելու են կենցաղային սպասարկման մի քանի տասնյակ նոր օբյեկտներ։

Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը հսկայական ոգևորությամբ ընդունեց մեր պարտիայի և կառավարության որոշումները գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ և պայքարի ելավ այդ որոշումների կենսագործման համար։

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության հետագա աճման հիման վրա զգալիորեն բարելավվում է աշխատավորների բարեկեցությունը, բարձրանում է նրանց նյութական ու կուլտուրական մակարդակը։ Սովետական Հայաստանը ծածկված է բուհերի, դպրոցների, տեխնիկումների, ակումբների,



գրադարանների, կինո-թատրոնների, մանկապարտեզների, մանկամսուրների, առողջապահական հիմնարկների խիտ ցանցով։ Պարտիան բոլոր հնարավորությունները ըստեղծել է հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի զարգացման համար։

***

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը ընթանում է անշեղ վերելքի ուղիով և ապահովում է աշխատավորների ունևոր ու երջանիկ կյանքը, կապիտալիստական երկրներում աշխատավորները իրենց գոյությունը քարշ են տալիս կարիքի և զրկանքների մեջ, գործազրկության մշտական սպառնալիքի տակ։

Չնայած սպառազինությունների մրցավազքին, ամբողջ էկոնոմիկայի միլիտարացմանը, ԱՄՆ-ում ակնհայտորեն հասունանում է տնտեսական ճգնաժամը։ Նույնիսկ ռեակցիոն մամուլում ավելի ու ավելի հաճախ են հնչում խուճապային նոտաներ ամերիկյան էկոնոմիկայի զարգացման հեռանկարների նկատմամբ։ Եթե ՍՍՌՄ-ում 1953 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը ավելացավ 12

տոկոսով, ապա ԱՄՆ-ում այն կրճատվեց 10 տոկոսով, պողպատի ձուլումն իջավ 22 տոկոսով։ Հազարավոր ձեռնարկություններ և ֆիրմաներ փակվում են, հարյուր հազարավոր բանվորներ դուրս են նետվում փողոց, ավելանում է գործազուրկների քանակը։

Ամերիկյան մամուլի տվյալներով՝ ամերիկյան ընտանիքների 80 տոկոսի եկամուտը ցածր է ապրուստի մինիմումից, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 7 տարում (1944—1951 թ. թ.) իջել է 30 տոկոսով, իսկ հացի գները 1952 թվականին, 1947 թվականի գների հետ համեմատած, թանկացել են 28 տոկոսով, մսինը՝ 26 տոկոսով։ Է՛լ ավելի վատ է ֆերմերների և գյուղատնտեսական բանվորների վիճակը։ Անգլիայում, աշխատանքի մինիստրության պաշտոնական տվյալների համաձայն, սննդամթերքների գները 1948—1951 թ. թ. ավելացել են 33 տոկոսով, իսկ 1951 թ. հոկտեմբերից հետո հացի, յուղի, պանրի, բրնձի, թեյի գներն աճել են 50 տոկոսով։ Առանձին մթերքների գները նախապատերազմյանի հետ համեմատած ավելացել են՝ կարտոֆիլինը՝ 2,5, ձկնամթերքներինը՝ 3 անգամ, կոստյումներինը՝ 4 անգամ, կոշկեղենինը՝ 3 անգամ։ Սննդամթերքների գները



Ֆրանսիայում 28 անգամ բարձր են նախապատերազմյանից, իսկ ռեալ աշխատավարձը ցածր է 2 և կես անգամ։ Վերջին տարիների ընթացքում գյուղատնտեսական մթերքների գները Ֆրանսիայում ավելացել են 2,5 անգամ, իսկ արդյունաբերական ապրանքներինը՝ 4,5 անգամ։ Իսկ ռազմական ծախսերը վերջին 5 տարում Անգլիայում ավելացել են ավելի քան 2 անգամ, Ֆրանսիայում՝ 3 անգամ։

Սպառազինությունների մրցավազքի ծախսերի հետ մեկտեղ ուժեղանում է աշխատավորների քայքայումը, բարձրացվում են հարկերը, կրճատվում են բնակչության քաղաքացիական կարիքների համար արվող հատկացումները։ Իսկ այս բոլորն է՛լ ավելի է սրում կապիտալիստական հասարակության հակասությունները, խարխլում նրա առանց այն էլ խախուտ հիմքերը։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը և բոլոր աշխատավորները, գաղութային և կախյալ երկրների ժողովուրդները Մայիսի մեկը կնշեն որպես իմպերիալիստական ճնշման և շահագործման դեմ, խաղաղության և դեմոկրատիայի, ազգային անկախության և ազատության համար պայ-

քարելու գործում իրենց ուժերի համախմբման օր։

Խաղաղության և ժողովուրդների անվտանգության պաշտպանության գործն իրենց ձեռքն են վերցնում միլիոնավոր մարդիկ։ Հատկանշական է այն, որ սոցիալական տարբեր խմբերի, քաղաքական ու կրոնական տարբեր հայացքների պատկանող մարդիկ միավորվում են խաղաղության և ազգային անվտանգության պաշտպանության բազայի վրա։

Աճում է Ֆրանսիայի հայրենասերների վճռականությունը՝ պաշտպանելու իրենց Հայրենիքը ֆրանսիական մեծ ազգի երդվյալ թշնամի գերմանական միլիտարիզմի վերածնման վերահաս վտանգից, ամերիկյան իմպերիալիստների ոտնձգություններից։ Իտալիայում և Եվրոպայի մյուս երկրներում ավելի ու ավելի է ամրապնդվում ժողովուրդների ձգտումը՝ պաշտպանելու խաղաղությունը և իրենց երկրների ազգային ինքնուրույնությունը։

Խաղաղության կողմնակիցները հզոր ուժ են դարձել Ասիայում, որի ժողովուրդները լի են վճռականությամբ՝ Ասիան պատերազմի խրոնիկական օջախից դարձնելու միջազգային խաղաղության հուսալի ամրոց։ Խա-



ղաղության ամրապնդման մեջ արժեքավոր ավանդ է մտցնում Հնդիկ մեծ ժողովուրդը։ Ավելի ու ավելի է ընդլայնվում հակաիմպերիալիստական շարժումը Լատինական Ամերիկայի երկրներում, Մերձավոր Արևելքում։ Բոլոր երկրների հարյուր միլիոնավոր մարդիկ անհողդողդ վճռականությամբ պայքարում են ընդդեմ գաղութային ստրկության, հանուն գաղութային ժողովուրդների ազգային անկախության, հանուն խաղաղության և դեմոկրատիայի։

Չին մեծ ժողովուրդը, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները Մայիսի մեկը նշանավորում են նորանոր հաջողություններով նոր, ազատ կյանքի կառուցման, էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման համար մղվող պայքարում։ Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում կրճատվում է մասսայական սպառման առարկաների արտադրությունը, աճում է աղքատությունը և գործազրկությունը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները անշեղորեն ընթանում են տնտեսական վերելքի և ժողովրդական մասսաների բարեկեցության աճման ուղիով։

1953 թվականին արդյունաբերական արտադրությունը Լեհաստանում աճեց 17,5

տոկոսով, Չեխոսլովակիայում՝ 10 տոկոսով, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում՝ 12,5 տոկոսով, Հունգարիայում՝ 11,8 տոկոսով, Ռումինիայում՝ 14,4 տոկոսով, Բուլղարիայում՝ 12 տոկոսով, Ալբանիայում՝ 22 տոկոսով։

Էկոնոմիկայի զարգացման գործում ձեռք բերած հաջողությունների հիման վրա ժողովրդական դեմոկրատիայի երկրներում բարձրանում է աշխատավորների կենսամակարդակը, սիստեմատիկաբար իրագործվում է առաջին անհրաժեշտության ապրանքների գների իջեցումը, բարձրանում է աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։

ՍՍՌՄ և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հաջողությունները էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում ոգեշնչում են խաղաղության բոլոր կողմնակիցներին, ամբողջ աշխարհի աշխատավորությանը՝ խաղաղության, ժողովրդի լավագույն ապագայի համար նրանց մղած պայքարում։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրները ՍՍՌՄ գլխավորությամբ կազմում են խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի հզոր լագերը։ Ամրապնդվում է Սովետական



Միության մեծ բարեկամությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հետ, աճում և ամրապնդվում է ՍՍՌՄ եղբայրական համագործակցությունը Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Ռումինիայի, Բուլղարիայի, Ալբանիայի, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հետ։

Խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերը Սովետական Միության ղեկավարությամբ այժմ իրենից ներկայացնում է այնպիսի ուժ, որն իր հզոր ազդեցությունն է գործում միջազգային կյանքի ամբողջ ընթացքի վրա։

Սովետական Միությունը անշեղորեն պայքարում է ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու ու ժողովուրդների անվտանգությունն ապահովելու համար։ Բայց ռեակցիոն շրջանները չեն դադարեցնում ՍՍՌՄ-ի դեմ ոտնձգություններ անելու փորձերը, որոնք նոր պատերազմի նախապատրաստման քաղաքականություն են վարում։

Ռուսի պարտիան և կառավարությունը ձգտելով մեղմացնել լարվածությունը մի-

*ջազգային հարաբերություններում, հող են տանում Սովետական պետության ամեն կերպ ուժեղացման, սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը և մեր Հայրենիքի անվտանգությունը պահպանող Սովետական Միության Զինված Ուժերի հետագա և անշեղ ամրապնդման ու կատարելագործման մասին։ Խաղաղության և ժողովուրդների անվտանգության հզոր պատվարի՝ Սովետական պետության հզորության ուժեղացումը մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն պայմանն է։*

*Սովետական ժողովուրդը իր ձեռք բերած մեծագույն հաջողությունների համար պարտական է սոցիալիստական հասարակարգին, մեր բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքին, մեծ Լենինի ստեղծած Կոմունիստական պարտիային։*

*Կեցցե՛ աշխատավորների միջազգային տոնը՝ Մայիսի մեկը։*

---

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Կիրովականի մեքենաշինական գործարանի ագիտատոր ընկ. Գ. Ստեփանյանը ունկնդիրների համար սիստեմատիկաբար հետաքրքիր և նպատակասլաց ագիտացիոն զրույցներ է կազմակերպում արտադրանքի ինքնարժեքի իջեցման մասին։ Ահա նրա այդ զրույցներից մեկը ինքնարժեքի իջեցման վերաբերյալ։*

*— Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման համար,—ասաց նա—խոշոր նշանակություն ունի ինքնարժեքի իջեցումը։*

*Ինքնարժեքի իջեցումը վճռական նշանակություն ունի սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը բարձրացնելու գործում։ Որքան ցածր լինի արտադրանքի ինքնարժեքը, այնքան էժան կլինեն թե՛ պարենամթերքի և թե՛ արդյունաբերական ապ-*

*րանքների գները, հետևաբար, անընդհատ կբարձրանա ժողովրդի կենսամակարդակը։*

*Այդ է պատճառը, որ ՍՄԿՊ 19-րդ համագումարն այդքան կարևորագույն նշանակություն տվեց արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը և խնդիր դրեց արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքն իջեցնել մոտավորապես 25 տոկոսով, ձեռնարկությունների եկամտաբերությունը բարձրացնելու նպատակով անշեղորեն կիրառել խնայողության ռեժիմը, որոնել, գտնել և օգտագործել արտադրության ընդերքում թաքնված բոլոր ռեզերվները, առավելագույն չափով օգտագործել եղած արտադրական կարողությունները, սիստեմատիկաբար բարելավել արտադրության մեթոդները և այլն։*

*— Արտադրանքի ինքնարժեքը, շարունակում է ագիտատորը, դա այն հիմնական ցուցանիշն է, որը բնութագրում է ձեռնարկության աշխատանքի որակը։ Ինքնարժեքի մեջ, ինչպես հայելու մեջ, արտացոլվում են ձեռնարկության կոլեկտիվի նվաճումներն ու թերությունները, նրա պայքարը աշխատանքի արտադրողականության բարձրացման, մեքենաների և սարքավորումների արդյունավետ օգտագործման, հումույթի, վառելի-*



*քի, էլեկտրաէներգիայի խնայողության համար։*

*Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին պատմեց, թե ինչ է արված իրենց մոտ արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու և գործարանի աշխատանքն ավելի շահութաբեր դարձնելու համար, բերելով կոնկրետ թվեր ու փաստեր։ Մեր գործարանը, ասաց նա, արտադրական բարձր ցուցանիշներով փակեց տնտեսական տարին։ Գործարանի կոլեկտիվը տարեկան պլանը կատարեց ժամկետից շուտ, դրա հետ մեկտեղ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 8,5 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքը իջավ 12,8 տոկոսով, արտադրանքի թողարկումն աճեց 6,2 տոկոսով, հումք տնտեսվեց 1,5 տոկոսով, վառելանյութ՝ 5 տոկոսով, էլեկտրաէներգիա՝ 12,5 տոկոսով։ Կատարված է 256,000 ռուբլու արտապլանային կուտակում։*

*Աշխատանքում ձեռք բերված այդ հաջողությունները արդյունք են գործարանի նորարարների և ռացիոնալիզատորների, բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների սերտորեն համագործակցված աշխատանքի։ Միայն անցյալ տարի արտադրության մեջ ներդրվեց 39 ռացիոնալիզա-*

տորական առաջարկություն։ Մեծ չափով տնտեսվեցին թանկարժեք գունավոր և սև մետաղներ, իսկ ցեխային ծախսերը կրճատվեցին 3,7 տոկոսով։

Ինչպես գիտեք, հիշեցնում է ագիտատորը ունկնդիրներին, երկար ժամանակ գործարանում բանվորները մեքենաները բեռնում ու դատարկում էին ձեռքով, իսկ այժմ թեթևացել, հեշտացել է բանվորների աշխատանքը։ Այդ նույն գործը 6 հոգու փոխարեն կատարում է մի հոգի, շնորհիվ այն բանի, որ նորարարների առաջարկությամբ և բոլորի ակտիվ մասնակցությամբ պատրաստվեց ծանր բեռներ փոխադրող վերամբարձիչ։ Մինչև վերջերս ձուլարանի ցեխում կաղապարների պատրաստումը և նրանց մեջ լցված ձուլվածքի փոխադրումը կատարվում էր ձեռքով, այժմ այդ աշխատանքը մեքենայացված է, որի շնորհիվ յուրաքանչյուր օր տնտեսվում է 10—15 բանվորական ձեռք։ Արտադրության մեջ ներդրված է նաև նորարարների առաջարկությամբ պատրաստված նոր մկրատ, որը մի հարվածով կտրում է մինչև 40 միլիմետր հաստությամբ պողպատ։ Ռացիոնալիզատորական այդ առաջարկության կիրառման շնորհիվ աշխատանքի արտադրողականու-



թյունը գործարանում բարձրացավ 40—50 տոկոսով։

Ագիտատորը ավարտելով իր զրույցը այն մասին, թե գործարանում ինչ է կատարվել արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ, սկսեց ունկնդիրներին մանրակրկիտ կերպով պարզաբանել ինքնարժեքի իջեցման աղբյուրների մասին։ Հատկապես մասսայաբար խրախուսեց նրանց, ովքեր աչքի ընկնող աշխատանք են կատարում հումքի, էլեկտրաէներգիայի, վառելիքի խնայողության գործում։

— Հիշեցեք, ասաց նա, որ խնայողության ռեժիմը,— ժողովրդական տնտեսության հետագա վերելքի կարևորագույն լծակն է։ Խնայողության ռեժիմն է՛լ ավելի մեծ նշանակություն է ստանում այժմ, երբ մեր երկրում իրականացվում է ժողովրդական տնտեսության նոր, հզոր վերելք և դրա հետ միաժամանակ անց է կացվում մասսայական սպառման ապրանքների գների սիստեմատիկ իջեցում։ Կոմունիստական պարտիան միշտ մեծ ուշադրություն է նվիրել և նվիրում է խնայողության ամենախիստ ռեժիմի համար մղվող պայքարին, խնայողության ռեժիմը դիտելով որպես ներտնտեսական կուտակումներ ստեղծելու և կուտակ-

ված միջոցները ճիշտ օգտագործելու կարևորագույն պայման։

Գործարանում արտադրանքի ինքնարժեքի իջեցման վերաբերյալ ագիտացիոն աշխատանքի լավագույն փորձ ունեն նաև ագիտատորներ Վ. Սիազյանը, (կաթսայագործական ցեխ), Վ. Գալստյանը (ձուլարան) և ուրիշները։ Նրանք ունկնդիրներին հանգամանորեն պարզաբանում են, թե ինչպիսի վիթխարի նշանակություն ունի ինքնարժեքի իջեցումը ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության հետագա վերելքի և բազմակողմանի զարգացման գործում։

Ագիտատորները իրենց զրույցների ընթացքում միաժամանակ բացահայտում են գոյություն ունեցող թերությունները ինքնարժեքի իջեցման գործում։ Ունկնդիրների օգնությամբ նրանք բազմիցս ցույց են տվել, որ գործարանում լայն հնարավորություններ կան արտադրական ռեսուրսներն ավելի արդյունավետ օգտագործելու համար։

---



# ՈՒԿՐԱԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

## (Թվեր և փաստեր)

Սովետական Ուկրաինայում ծաղկում ու բարգավաճում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Ուկրաինական ժողովուրդը վիթխարի հաջողությունների է հասել ժողովրդական կրթության, կուլտուրայի և գիտության զարգացման բնագավառում։

✪ Մինչ Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան Ուկրաինայում բնակչության միայն 20 տոկոսն էր գրագետ, իսկ այժմ Ուկրաինան հանդիսանում է համատարած գրագիտության երկիր։ Ռեսպուբլիկայում կա մոտ 30 հազար մասսայական դպրոց, որտեղ մայրենի լեզվով սովորում են ավելի քան 6,5 միլիոն երեխաներ։ Միաժամանակ գործում են 4.200 բանվորական և գյուղական երիտասարդության դպրոցներ, ուր սո-

վորում են 300 հազար պատանիներ ու աղջիկներ։ Ուկրաինայում չկա մի գյուղ, որտեղ չլինի դպրոց և չկա մի քաղաք, որտեղ չլինի բարձրագույն կամ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն։

✪ Հատկապես շատ արագ է աճում դպրոցների թիվը ռեսպուբլիկայի արևմտյան մարզերում։ Մինչ Ուկրաինական ՍՍՌ հետ վերամիավորվելը՝ Անդրկարպատյան Ուկրաինայում կար 7 միջնակարգ և 18 յոթնամյա դպրոց։ Այժմ այնտեղ գործում են 71 միջնակարգ և 333 յոթնամյա դպրոց։

✪ 1952—53 թվականներին ռեսպուբլիկայում կար 144 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնցում սովորում էին ավելի քան 177 հազար ուսանող, որը գրեթե 8 անգամ ավելի է, քան 1914 թվականին և ավելի, քան Արևմտյան Եվրոպայի ամեն մի կապիտալիստական երկրում։

✪ Ռեսպուբլիկայի 591 տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում են մոտավորապես 234 հազար մարդ։ Ուկրաինայի բուհերը և տեխնիկումները միայն 1953 թվականին երկրին տվեցին 76 հազար երիտասարդ մասնագետներ։

✪ Բուհերի և տեխնիկումների լայն ցան-



ցը հնարավորություն է տալիս մասնագետ կադրեր պատրաստել արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Ուկրաինայում ներկայումս աշխատում են մոտ 300 հազար ուսուցիչներ, մոտ 50 հազար բժիշկներ, տասնյակ հազարավոր ինժեներներ, տեխնիկներ, ագրոնոմներ, զոոտեխնիկներ և այլ մասնագետներ։

✪ Ուկրաինայի մայրաքաղաք Կիևում հաշվվում են տասնյակ բարձրագույն ուսումնական հաստատություններ և տեխնիկումներ, որոնցում սովորում են ավելի, քան 50 հազար ուսանողներ։ 212 միջնակարգ, ոչ լրիվ միջնակարգ և մասնագիտական դպրոցներում սովորում են 140 հազար երեխա։

✪ Կիևը իրավամբ համարվում է Ուկրաինայի սոցիալիստական կուլտուրայի կենտրոնը։ Այստեղ է գտնվում Ուկրաինայի Գիտությունների ակադեմիան, որը ստեղծվել է սովետական իշխանության հաստատման հենց առաջին տարիներին։ Ակադեմիան միավորում է 52 գիտական հիմնարկների, 480 գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատանքը։ Այստեղ աշխատում են ակադեմիայի 90 իսկական անդամներ, 105 անդամ-թղթակիցներ, ավելի քան 15 հազար գիտա-

կան աշխատողներ։ Ռեսպուբլիկայում գործում է նաև Ճարտարապետության ակադեմիան։

✪ Կիևում կան 10 թանգարան, որոնց թվում Վ. Ի. Լենինի անվան Միութենական Կենտրոնական թանգարանի Կիևյան ֆիլիալը, հաջողությամբ գործում են 7 թատրոն, տասնյակ ակումբներ, կուլտուրայի պալատը, կինո-թատրոններ, պլանետարիա և հարյուրավոր գրադարաններ։

Կառուցված է հզոր հեռուստատեսական կենտրոն, որից օգտվում են ոչ միայն մայրաքաղաքի, այլև մոտակա մարզերի և Բելոռուսիայի հարավ-արևելյան մասի բնակիչները։

✪ Գիտության և բարձրագույն կրթության զարգացման գործում Ուկրաինային մեծ օգնություն են ցույց տվել և շարունակում են ցույց տալ — ռուս գիտնականները։ Միայն վերջին ժամանակներս Մոսկվայի և Լենինգրադի գիտական հիմնարկները ռուս գիտնականների անմիջական օգնությամբ Ուկրաինայի համար պատրաստել են տարբեր գիտությունների գծով 40 դոկտորներ և գիտությունների շատ թեկնածուներ։ Այդ ցույց է տալիս, թե ինչպես եղբայրական ռուս ժողովրդի օգնությամբ աճում են ազգային կադրերը Ուկրաինայում։



✪ Ռեսպուբլիկայում գործում են տասնյակ հազարավոր կուլտուր-լուսավորական հիմնարկներ, ակումբներ, գրադարաններ, կուլտուրայի պալատներ։ Նշանակալից են Ուկրաինական գրականության, թատրոնի, երաժշտության հաջողությունները։ Ուկրաինական կուլտուրայի շատ գործիչներ արժանացել են Ստալինյան մրցանակի լաուրեատի բարձր կոչման։

✪ Ուկրաինական ժողովրդի հպարտությունն է նրա ծաղկող արվեստը։ Ռեսպուբլիկայում ստեղծված և գործում են 74 թատրոն և 65 ուրիշ ստեղծագործական կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված են 12 հազար արվեստի աշխատողներ։ Ռեսպուբլիկայում կա մոտ 28 հազար կուլտուրայի տուն և ակումբ, 84 թանգարան, ավելի քան 30 հազար մասսայական գրադարան և այլն։

✪ Ուկրաինական ժողովրդի կուլտուրական աճի մասին է վկայում հրատարակչական գործի արագ զարգացումը։ Եթե 1913 թվականին Ուկրաինայում հրատարակվել են 9 միլիոն 986 հազար օրինակ ընդհանուր տիրաժով գրքեր, ապա 1952 թվականին լույս է ընծայվել 3.719 անուն գիրք՝ 69 միլիոն 362 հազար օրինակ ընդհանուր տիրաժով։

✪ Հետպատերազմյան տարիներին ա-

վարտվեց Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակության լույս ընծայումը ուկրաիներեն լեզվով, 100 հազար օրինակ տիրաժով, հրատարակվել են Ի. Վ. Ստալինի Երկերի 13 հատորները, Կարլ Մարքսի «Կապիտալ»-ը և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների այլ աշխատություններ: Զգալիորեն աճել է գիտական, մասնավորապես գյուղատնտեսական գրականության հրատարակությունը: Ուկրաիներեն թարգմանությամբ հրատարակվել են ռուս և համաշխարհային կլասիկ գրականության երկեր, ինչպես նաև եղբայրական ռեսպուբլիկաների գրողների ստեղծագործություններ:

✪ Ներկայումս Ուկրաինական ՍՍՌ-ում հրատարակվում է 1.174 թերթ, 56 ամսագիր, ավելի քան 6 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով: Ռեսպուբլիկայում գործում են տասը լայնահաղորդ ռադիոկայաններ, չորս հազարից ավելի ռադիո-հանգույցներ:

✪ Սովետական Ուկրաինայում կա 460 սանատորիա և հանգստի տուն, ավելի քան 3 հազար մանկապարտեզ: 1940 թվականի համեմատությամբ հիվանդանոցների թիվը Ուկրաինայի քաղաքներում ավելացել է 30 տոկոսով, իսկ գյուղերում՝ 2 անգամ:

---

### ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## ՎՅԵՏՆԱՄ

Մի խումբ ընթերցողներ դիմել են խմբագրությանը, խնդրելով տպագրել ճոդված Վյետնամի մասին:

*Վյետնամը գտնվում է Հնդկաչին թերակղզում, ունի 350 հազար քառակուսի կիլոմետր տերիտորիա և 22 միլիոն բնակչություն:*

*Ֆրանսիական իմպերիալիստները 19-րդ դարի 80-ական թվականներին զավթելով Վյետնամը, այն բաժանեցին 3 մարզի՝ Տոնկին, Աննամ և Կոխինխինա, որոնք Լաոսի և Կամբոջայի հետ կազմեցին այսպես կոչված «Ֆրանսիական Հնդկաչին»:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ Հնդկաչինը օկուպացիայի ենթարկվեց յապոնական զորքերի կողմից: Բայց Վյետնամի ժողովուրդը, որը բազմամյա պայքար էր մղում ֆրանսիական գաղութարարների դեմ, չխոնարհվեց յապոնական իմպերիալիստներին, այլ սկսեց հերոսական պայքար մղել ընդդեմ նոր ստրկացնողների, հանուն իր հայրենիքի ազատության և անկախության:*

*Դեռ 1941 թվականի մարտին կոմունիստական պարտիայի նախաձեռնությամբ և ղեկավարությամբ ստեղծվեց Վյետնամի անկախության համար մղվող*

պայքարի Դեմոկրատական ճակատ՝ ՎՅԵՏ-ՄԻՆ, որի մեջ, կոմունիստական պարտիայի հետ միասին, մտան նաև պրոֆմիութենական, գյուղացիական, երիտասարդական և կանանց կազմակերպությունները, կաթոլիկների, բուդդայականների կրոնական կազմակերպությունները, մանր բուրժուական և բուրժուական որոշ պարտիաները, որոնք ցանկություն էին արտահայտում՝ պայքարել երկրի անկախության համար։

Սովետական Միության պատմական հաղթանակները Հայրենական Մեծ պատերազմում պայքարի ոգեշնչեցին Վյետնամի ժողովրդին յապոնական օկուպանտների դեմ։ Հիտլերյան Գերմանիայի և իմպերիալիստական Յապոնիայի ջախջախումից հետո Վյետնամի աշխատավորները դեն շպրտեցին իմպերիալիստների գաղութային դաժան շահագործման և ազգային ճնշման լուծը։ 1945 թվականի սեպտեմբերի 2-ին Վյետնամը հռչակվեց անկախ դեմոկրատական ռեսպուբլիկա։

Ֆրանսիական իմպերիալիստները, ցանկանալով պահպանել իրենց նախկին տիրապետությունը Վյետնամում, 1945 թվականի սեպտեմբերին ԱՄՆ-ի և Անգլիայի օգնությամբ սկսեցին գաղութային, թալանչիական պատերազմ ազատասեր Վյետնամի ժողովրդի դեմ։ Բայց զգալով, որ Վյետնամի ժողովրդին չի կարելի հաղթել միայն ռազմական ուժով, Ֆրանսիայի ռեակցիոն կառավարությունը ձևականո-



րեն ճանաչեց Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։

Կոպիտ կերպով խախտելով իր պարտավորությունները անկախ Վյետնամի նկատմամբ՝ ֆրանսիական իմպերիալիստները 1946 թվականի վերջերին ուխտադրուժ կերպով ռազմական գործողություններ սկսեցին Վյետնամի դեմ։

Ամբողջ Վյետնամի ժողովուրդը կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ՝ իր առաջնորդ Խո Շի Մինի կոչով դուրս եկավ հերոսական ազատագրական պատերազմի։ Ֆրանսիայի գաղութարարների դեմ դիմադրության շարժման ծավալման համար 1946 թվականին ստեղծվեց Լյեն-Վյետ լիգան («Ազգային միություն»), որը համախմբեց դիմադրության բոլոր կողմնակիցներին՝ բանվորներին, գյուղացիությանը, ինչպես նաև ինտելիգենցիայի, ազգային բուրժուազիայի, հողատերերի, հոգևորականության հայրենասիրությամբ տրամադրված խավերին։

Հաջողությամբ վարելով ռազմական գործողությունները, Վյետնամի ժողովրդական բանակը 1950 թվականի աշնանը ազատագրեց երկրի շատ կարևորագույն շրջանները։ Արդեն 1952 թվականին դեմոկրատական կառավարության վերահսկողության տակ գտնվում էր երկրի ամբողջ տերիտորիայի 90 տոկոսից ավելին, մոտ 20 միլիոն բնակչությամբ։

Չնայած այն բանին, որ երիտասարդ ռեսպուբլիկան

ստիպված էր առաջին իսկ օրերից զենքով պաշտպանել իր իրավունքը անկախ գոյության համար, Վյետնամի աշխատավորները միաժամանակ անձնվիրաբար աշխատում էին հանուն իրենց ժողովրդա-դեմոկրատական պետության քաղաքական և տնտեսական դրության ամրապնդման։ Ժողովրդի դեմոկրատական իրավունքները հաստատվեցին 1946 թվականի նոյեմբերի 10-ին ընդունված կոնստիտուցիայով։ Այդ կոնստիտուցիան հռչակեց, որ Վյետնամը ներկայացնում է իրենից դեմոկրատական ռեսպուբլիկա։ Ամբողջ իշխանությունը երկրում պատկանում է Վյետնամի ժողովրդին՝ առանց ռասայի, դասակարգային, կրոնական խտրության։ Բոլոր քաղաքացիները՝ սկսած 18 տարեկան հասակից ստացան ընտրական ձայնի իրավունք։

Վյետնամում ժողովրդական դեմոկրատիայի իշխանության տարիներին անց են կացվել բազմաթիվ կարևոր միջոցառումներ, որոնք նպաստում են արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն զարգացմանը։ Թիկունքի միլիոնավոր աշխատավորներ ակտիվորեն օգնում են հայրենիքի ազատության և անկախության համար մղվող պայքարին։

Ամերիկյան իմպերիալիստները զգալով ֆրանսիական գաղութարարների պարտության վտանգը Վյետնամում, անընդհատ ուժեղացնում են նրանց ցույց տրվող ռազմական օգնությունը։ Միաժամանակ Ուոլլստրիտի մոնոպոլիստները ուժեղացրել են երկրի օկու-



պացված շրջաններից ստրատեգիական հումքի (կաուչուկ, կապար) թալանը։ Վաշինգտոնի թելադրանքով 1949 թվականի մարտին Վյետնամում օկուպացված տերիտորիայում ստեղծվեց մանկլավիկային «կառավարություն»՝ նախկին «կայսր» Բաո Դայի գլխավորությամբ։ ԱՄՆ-ը Վյետնամի տերիտորիայում ձգտում է ստեղծել պլացդարմ՝ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ ագրեսիա կատարելու համար։

Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը հիացմունքով դիտում է Վյետնամի ժողովրդի հերոսական պայքարը իր երկրի ազատության և անկախության համար։

Վյետնամի միջազգային դիրքերի ամրապնդման համար կարևորագույն նշանակություն ունեցավ 1950 թվականի հունվարի 30-ին Սովետական Միության և Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի միջև դիվանագիտական հարաբերությունների սահմանումը։ Վյետնամի հետ դիվանագիտական հարաբերություններ են սահմանել նաև Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները։

Վյետնամի ժողովրդի պայքարի իսկական կազմակերպիչն ու ոգեշնչողը հանդիսանում է Վյետնամի Աշխատավորների պարտիան։ Աշխատավորների պարտիան, որը բանվոր դասակարգի և Վյետնամի բոլոր աշխատավորների ավանգարդն է, հիմնվում է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների վրա։ Նա ստեղծվել է

1951 թվականի փետրվարին։ Նրա շարքերում պայքարում են ավելի քան 700 հազար մարդ։

1951 թվականի մարտին ստեղծվեց Վյետնամի Միացյալ ազգային ճակատը, որի մեջ մտան Վյետ-Մինի և Լյեն-Վյետի միավորումները։ Այդ բանը ունեցավ մեծ նշանակություն միացյալ, անկախ, դեմոկրատական Վյետնամի համար մղվող պայքարում՝ ընդդեմ ամերիկա-ֆրանսիական իմպերիալիստների։ Վյետնամում առաջատար ուժ է հանդիսանում բանվոր դասակարգը, որն ունի սերտ միասնություն աշխատավոր գյուղացիության հետ։

Վյետնամի ժողովրդական կառավարությունը և Աշխատավորների պարտիան ձեռք են բերել լուրջ նվաճումներ գյուղատնտեսության և արդյունաբերության զարգացման, ինչպես նաև կուլտուրական շինարարության բնագավառում։

Հանդիպելով Վյետնամի ժողովրդի վճռական հակահարվածին, ֆրանսիական իմպերիալիստները Հնդկաչինում ահագին կորուստներ են կրում։ Պատերազմը Վյետնամում, որը մղվում է ֆրանսիական և ամերիկյան մոնոպոլիաների շահերի օգտին, ֆրանսիական ժողովրդի ուսերի վրա դնում է ծանր լուծ։ Աշխատավորները այդ պատերազմը անվանում են «կեղտոտ» անհույս պատերազմ։

Վերջին ժամանակներս ֆրանսիական լայն հասարակության պահանջը Հնդկաչինում «կեղտոտ» պատերազմի դադարեցման մասին այնքան ուժեղացավ, որ



նրա հետ չեն կարող հաշվի չնստել Ֆրանսիայի կառավարող շրջանները։

Հնդկաչինում խաղաղության վերականգնման ճանապարհին գլխավոր խոչընդոտ է հանդիսանում, ինչպես ցույց են տալիս փաստերը, ԱՄՆ-ի ուժեղացող միջամտությունը պատերազմական գործողություններին։ Վաշինգտոնի ուժեղ ճնշման տակ Ֆրանսիայի կառավարող շրջանները անպատասխան թողեցին Վյետնամի առաջարկները՝ բանակցություններ սկսել խաղաղության մասին և չարձագանքեցին Հնդկաստանի պրեմյեր-մինիստր Ներուի դիմումին Հնդկաչինում պատերազմական գործողությունները դադարեցնելու վերաբերյալ։

Թե ինչպես ԱՄՆ-ը ակտիվորեն միջամտում է պատերազմին Հնդկաչինում, կարելի է դատել վերջերս ամերիկյան ժուռնալ «Թայմ»-ում հրապարակված տվյալներով։ 1950 թվականից հետո ԱՄՆ-ը Հնդկաչին ուղարկեց 360 ռազմական ինքնաթիռ, 390 ռազմանավ, 21 հազար բեռնատար և կցորդ ավտոմեքենա, 1400 տանկ և ուրիշ մարտական մեքենաներ, 175 հազար հրացան և ավտոմատ։ 1953 թվականի սեպտեմբերին ԱՄՆ-ի պրեզիդենտ Էյզենհաուերը հաստատեց ֆրանսիական իմպերիալիստներին լրացուցիչ օգնություն ցույց տալու մասին նախագիծը, որը հասնում է 385 միլիոն դոլարի։

Պատերազմը Հնդկաչինում խորթ է ֆրանսիական ժողովրդի ազգային շահերին և վնասում է նրան բա-

ջոր կողմերից։ Այդ պատերազմի պատճառով Ֆրանսիան թուլացնում է իր դիրքերը Արևմտյան Գերմանիայում՝ միլիտարիզմի վերածնման վտանգի հանդեպ։ Օրըստօրե ավելանում են պատերազմական ծախսերը Հնդկաչինում։ Պատերազմը կլանում է միլիարդների հասնող գումարներ։ Պատերազմի ամեն մի օրը Ֆրանսիայի աշխատավորների վրա նստում է 2 միլիարդից ավելի ֆրանկ։ Վյետնամի ժողովրդի դեմ մղվող այդ անարդարացի պատերազմում ոչնչանում են ֆրանսիական տասնյակ հազարավոր երիտասարդներ։ Ֆրանսիական էքսպեդիցիոն կորպուսը 7 տարվա ընթացքում կորցրել է ավելի քան 320 հազար զինվոր և սպա։

Ֆրանսիայում աշխատավորական լայն մասսաները հաստատակամորեն պահանջում են խաղաղ բանակցություններ Խո Շի Մինի կառավարության հետ, որը միակ օրինական և սուվերեն կառավարությունն է Վյետնամում։ Ֆրանսիայի ժողովուրդը պահանջում է վերջ դնել արյունահեղությանը, որը շարունակվում է ամերիկյան մոնոպոլիստների շահերի օգտին։

Ս. ՊԱՊՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

---

ՎՖ 09846 Պատվեր 357 Տիրաժ 8450

Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան
Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։